

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1950 Թ.

# ՊԻՈՆԵՐ

# ԵՐԳ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ* — *Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

Մենք ուզում ենք խաղաղություն,
Արև, ծաղիկ, ուրախ կյանք,
Մենք սիրում ենք երգ, խնդություն,
Գիտություն ու աշխատանք:

Ջա՜ն, ինչ լավ է ապրել ազատ
Արևի տակ կենսատու,
Ջա՜ն, հայրենիք մեր հարազատ,
Արևից էլ ջերմ ես դու:

Մեծ Ստալինն է խաղաղության
Առաջնորդը աշխարհում,
Նա բերում է ողջ մարդկության՝
Երջանիկ կյանք ու գարուն:

Կառուցում ենք գործարաններ,
Հորդ ջրանցքներ նորանոր,
Կյանք են առնում նոր այգիներ
Ու դպրոցներ լուսավոր:

Եվ ինչքան էլ թշնամին չար
Պատերազմի պատրաստվի,
Խաղաղությունը անպատճառ
Պատերազմին կհաղթի:

Ջա՜ն, ինչ լավ է ապրել ազատ
Արևի տակ կենսատու,
Ջա՜ն, հայրենիք մեր հարազատ
Արևից էլ ջերմ ես դու:



*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1950 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 22-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Ի. Վ. ՍՏԱԼԻՆ**






Սովետական Միությունը գնում է դեպի կոմունիզմ: Իրականացվում են բնության վերափոխման ստալինյան վիթխարի պլանները: Հազարավոր գիտնականներ ու գյուտարարներ ճարստացնում են հայրենական գիտությունը, առաջ են մղում սովետական տեխնիկան: Ստախանովական բանվորները անընդհատ գերակատարում են արտադրական պլանները: Սոցիալիստական դաշտերի հերոսները անեցնում են ռեկորդային բերք: Իրականանում է յոթնամյա պարտադիր ուսուցումը գյուղում, տասնամյա ուսուցումը՝ քաղաքներում:

Աշակերտները պետք է ավելի լավ սովորեն, ձեռք բերեն խոր ու հաստատուն գիտելիքներ, կոմունիզմի արժանի կառուցողներ դառնալու համար:

Ավարտվում է 1950 — 51 ուսումնական տարվա 1-ին կիսամյակը: Ռեսպուբլիկայի 300.000 դպրոցականներ անցած երկու քառորդի ընթացքում ձեռք բերեցին նորանոր գիտելիքներ: Մոտ 30.000 աշակերտ կիսամյակն ավարտեց գերազանց գնահատականներով:

Սակայն ոչ բոլոր պիոներներն ու դպրոցականները առաջին կիսամյակում լավ սովորեցին: Երեխաների մի մասն առաջին կիսամյակը փակեց վատ գնահատականներով: Դեռ կան այնպիսի աշակերտներ, որոնք կանոնավոր չեն պարապում դասերը և ճույսը դնում են ճուշելու, արտագրելու վրա:

Պիոներներն ու դպրոցականները պետք է օրինակ վերցնեն այն առաջավոր դպրոցներից, դասարաններից ու ջոկատներից, որտեղ բոլորը բարձր գնահատականներով են սովորում:

Երևանի Նար-Դոսի անվան իգական միջնակարգ դպրոցի 6-րդ «բ» դասարանի «Ուլյանա Գրոմովայի» անվան ջոկատի բոլոր պիոներները լավ են սովորում: Այդ դասարանում «2» գնահատական ստացող աշակերտ այլևս չկա: Վատ սովորող չկա նաև Ստեփանավանի շրջանի Կուրթան գյուղի միջնակարգ դպրոցի 6-րդ «ա» դասարանում: Այդ դասարանի աշակերտներից տասնվեցը միշտ ստանում են «4» և «5» գնահատականներ: Այդ նույն դպրոցի յոթերորդ դասարանում գերազանց գնահատականներով է սովորում կոմերիտական աշակերտուհի Գարեննա Մկրտչյանը: Նա գերազանցիկ է առաջին դասարանից սկսած և որոշել է այդպես էլ շարունակել մինչև տասերորդ դասարանն ավարտելը:

Իսկ ո՞րն է Մկրտչյանի լավ սովորելու գաղտնիքը: Մկրտչյանը չի բացակայում ոչ մի դասից. ուշադրությամբ լսում է ուսուցչի պատմածն ու բացատրածը և աշակերտների պատասխանները: Տանը, նախ դասերն է պատրաստում, ստուգում է ինքն իրեն, և երբ համոզված է, որ դասերը լավ գիտի, անցնում է այլ զբաղմունքի, ընթերցանության, խաղերի: Նա կարդում է ամեն օր, դրա համար էլ նրա գիտելիքները հարուստ են ու բազմազան: Միայն վերջին մեկ տարում նա կարդացել է մոտ 7000 էջ գեղարվեստական և այլ գրքեր:

Այդպես են սովորում նաև Զանգիբասարի շրջանի Գեղանիստ գյուղի միջնակարգ դպրոցի վեցերորդ դասարանի աշակերտ Գ. Ջղալյանը, Երևանի Մռավյանի անվան արական միջնակարգ դպրոցի հինգերորդ դասարանի աշակերտ՝ ջոկատի խորհրդի նախագահ Գուրգեն Գալստյանը և շատ ուրիշները:

Ինչպե՞ս կարելի է դասերը լավ յուրացնել, ամուր պահել հիշողության մեջ, ուսուցչին անսխալ, վստահ և գիտակցված պատասխաններ տալ:

Անվանի մանկավարժներն ասում են, և դա հաստատված է լավ սովորող աշակերտների կյանքից բերված հազարավոր օրինակներով, որ լավ սովորելը և անցած ուսումնական նյութի լավ յուրացումը հնարավոր է՝

1. Երբ աշակերտն ամեն օր կատարում է մտածված ու պլանաչափ աշխատանք, ունի պարապելու և հանգստանալու մշտական ռեժիմ, որը երբեք չի խախտում:

2. Երբ ուշադիր լսում է ուսուցչին, հետևվում է նրա բացատրությանը, տանը կատարում է ուսուցչի տված հանձնարարությունները:

3. Երբ ձգտում է ինքնուրույն կերպով կատարել աշխատանքը. հաղթահարելով իր առաջ կանգնած դժվարությունները, ձեռք է բերում համառ աշխատելու սովորություն:

4. Երբ սիստեմատիկ կերպով կրկնում է անցածը, հիշողության մեջ ամուր պահելու համար, նորից է սովորում վատ յուրացրածը, ղեկավարվելով՝ «կրկնությունը՝ գիտության մայրն է» ասացվածքով:

5. Երբ խորը ձևով գիտակցում է, որ լավ սովորելը՝ իր հայրենասիրական պարտքն է երկրի, պարտիայի, սովետական պետության հանդեպ, երբ նա բարձր է պահում դասարանի, ջոկատի, դպրոցի պատիվը և իր անձնականը ենթարկում կոլեկտիվի շահերին:

Անընդունակ երեխաներ չկան: Յուրաքանչյուր աշակերտ կարող է լավ սովորել:

Երկրորդ կիսամյակում լուրջ հարցեր են կանգնած պիոներների ու դպրոցականների առաջ: Պետք է յուրացնել ուսումնական տարեկան ծրագրերի մնացած կեսը, բացի դրանից կրկնել ամբողջ տարվա անցածը և, վերջապես, հանձնել տարեկան քննությունները:

Պետք է պայքարել, որ երկրորդ կիսամյակում ուսման մեջ ետ մնացողներ չլինեն, որպեսզի վերացվի անհարգելի պատճառով դասերից բացակայելը և ուշանալը:

Ետ մնացող ընկերներին օգնելը՝ ջոկատի, դասարանի պատվի գործն է:

Ամեն մի պիոներական ջոկատ պետք է տեղյակ լինի ետ մնացող ընկերների կյանքին, իմանա դասը լավ չսովորելու պատճառները և ուսուցչի ղեկավարությամբ օգնություն կազմակերպի նրանց համար:

Ընկերական կոլեկտիվը խիստ ու անողոք պետք է լինի ծույլերի նկատմամբ:

Պիոներներն ու դպրոցականները պետք է օգնեն ուսուցիչներին և դպրոցների դիրեկտորներին՝ վերացնելու երկտարեցիությունը, բարձրացնելու ուսման որակը: Այդ են պահանջում մեր Հայրենիքը, բոլշևիկների պարտիան, մեր առաջնորդ և ուսուցիչ մեծ Ստալինը:



# ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

### 1.

*Այդ օրը կոլխոզի նախագահը երկար շրջեց բամբակի դաշտերում։ Մայրամուտին նա վերադարձավ գրասենյակ և կատարածուին կանչեց ու ասաց.*

*— Անդրանի՛կ, տես՝ բրիգադիրները դաշտերից եկե՞լ են, կանչիր այստեղ։*

*Անդրանիկը գնաց։ Նախագահը վեր կացավ, մի ծխախոտ վառեց և, ծխի ժապավենը ծածանելով, բակ դուրս եկավ։*

*Բակում աղմկում էին սայլապանները։ Նրանք այգիներից բերել էին խաղողով լիքը տակառները և հանձնում էին մամլող գործարանին։ Գրասենյակի լուսամուտի տակ նստած երեխաները խոսում ու ծիծաղում էին։ Նախագահը նայեց նրանց, նայեց կշեռքի վրա կանգնած վերջին սայլին և, առանց մի բառ ասելու, ներս գնաց։*

*Շուտով բրիգադիրներն եկան։ Նախագահը պատասխանեց նրանց բարևին ու ոտքի կանգնեց.*

*— Բամբակի բերքը շատ առատ է չէ՞, ընկերնե՛ր։*

*— Անչա՛փ...*

*— Լա՛վ, ուրեմն այնպես պետք է անենք, որ ամբողջ բերքն անկորուստ հավաքենք։*

*Լուսամուտի տակ լռեց երեխաների աղմուկը։ Նրանցից մեկը նույնիսկ բարձրացավ թաթերի վրա ու ներս նայեց։*

*— Իսկ մենք հանգիստ ենք հավաքում, ընկերնե՛ր... բամբակը կարող է թափվել, փչանալ։*

*— Հա՛, — ծոր տվեց բրիգադիրներից մեկը. — կաշխատենք ավելի շատ հավաքել։*

*— Ամեն մի բրիգադ որ օրական երեք տոննա բամբակ հավաքի լավ է։ Եվ կարող ենք հավաքել։*

*Առաջադրանքը պարզ էր. բրիգադիրները գնացին։ Փողոց դուրս գալիս նրանք տեսան, որ լուսամուտի տակի երեխաներից ամեն մեկը մի կողմ է վազում։ Ամենից արագ վազում էր շիկահեր Գևիկը։ Նա սլանում էր դեպի դպրոց։*

### 2.

*Գևիկն այնպիսի թափով ներս ընկավ պիոներական սենյակ, որ անկյունում նստած օղակավար Մանիկը վեր թռավ ու ձեռքի վրձինը գցեց սեղանին փռված պատի թերթին։*



Գևիկը մի պահ նրան չտեսավ ու ջղայնացած բացագանչեց.

— Է՛հ, Մանիկն է՛լ... որտե՞ղ է տեսնես...

Մանիկը կչկչաց.

— Մանի՛կ, Մանի՛կ,— մոտ վազեց Գևիկը.— ես հենց նոր լսեցի, որ բամբակը դաշտում կարող է թափվել, փչանալ...

— Լա՛վ, վաղը կիրակի է. մեր օղակի բոլոր պիոներներին իմաց կտաս, որ առավոտը հավաքվեն կոլխոզի գրասենյակի մոտ։

Գևիկն էլ չսպասեց։ Թռավ դեպի տները։ Հետո նա Մանիկին գտավ պահեստի մոտ ու ասաց, որ բոլորին իմաց է տվել։

— Ասացի՞ր, որ գոգնոցներ վերցնեն։

— Ասացի։

Մյուս օրը, արևածագին, Մանիկը շտապեց կոլխոզի օղակավարուհի Մարգո Եփրեմյանենց տուն, որ նրան հայտնի իր օղակի որոշման մասին։

Մարգոն տանը չէր։ Դուռը բացեց նրա մայրը՝ Հոռոմսիմը։ Մանիկը բարևեց ու մտավ ընդարձակ բակը։ Նա տեսավ, որ գոմի ու մառանի արանքում, թոնրատան եղեգնյա լայն ծածկի տակ, քնած են Մարգոյի եղբայրները։

— Ո՞րտեղ է ընկեր Մարգոն,— հարցրեց նա շշուկով։

— Դաշտ է գնացել։

— Նո՞ր։

— Ի՞նչ ես խոսում, նա դեռ լույսը չբացված է գնում չանաքի։

— Վա՛հ,— զարմացավ Մանիկը.— օղակի մյուս անդամներն է՞լ են այդքան շուտ գնում։

— Բա ինչ. Մարգոն որ նրանց ձեն չի տալիս, նույնիսկ նեղանում են։

— Դու էլ ես նրա օղակի՞ց, մորաքույր։

— Այո։

Մանիկը շփոթվեց. չգիտես ինչու նայեց չորս կողմը, երկու մեծ սենյակը բաժանող միջանցքի դուռը, այգուն, բանջարանոցին... Լուսամուտներից մեկում նա տեսավ Մարգոյի քրոջը՝ Համիկին, որը նայեց բակ ու սկսեց հագնվել։

Մանիկն ուզեց մի բան ասել, բայց շրթունքը կծեց։ Գոմից լսվեց կովի բառաչը, ապա ոչխարների մայունը։

«Ինչքա՜ն շուտ է» մտածեց Մանիկը։

— Դե լավ,— եզրակացրեց նա և դուրս թռավ փողոց։

3.

Գյուղի ասֆալտապատ փողոցով առույգ քայլում են պիոներները։ Նրանց զվարթ երգը թռչում է դաշտերով, այգիներով և հովի հետ խաղալով գնում հասնում Արագածի լանջերին։

Ահա նրանք դուրս եկան գյուղից ու կանգ առան ջրանցքի կամուրջի վրա։ Երգը լռեց։ Բոլորը նայեցին ճանապարհի աջ ու ձախ կողմում տարածված գանգրահեր բամբակենու շարքերին. ապա իրար ետևից թռան առվից ու դաշտի եզրով արագ-արագ գնացին դեպի ուռենիների երկար շարքը, որտեղ չանաքում էր Մարգոն։

— Բարև, ընկեր Մարգո, եկել ենք ձեզ օգնելու,— հայտարարեց Մանիկը։

— Լավ եք արել,— խրախուսեց Մարգոն.— Իսկ ինչո՞ւ իմ դաշտն եք եկել։

Մանիկը նայեց պիոներների աչքե-

րին, ասես թե պատասխան էր փընտրում։

— Որովհետև... որովհետև՜... օղակն այդպես որոշեց... Հետո բամբակը կարող է թափվել, փչանալ։

— Մենք չենք թողնում, որ բամբակը փչանա, Մանիկ ջան,— ասաց Մարգոն։

— Ամեն ինչ վերջացրե՞լ եք,— տագնապով հարցրեց Մանիկը։

— Համարյա թե։ Իսկ ո՞վ է ձեզ ուղարկել այստեղ։

— Ոչ ոք․ մենք ինքներս։



— Բա եղա՜վ։ Մի գնայիք կոլխոզի նախագահի մոտ կամ դիմեիք կոմսոմոլի քարտուղարին․ ա՛յ, նա կասեր, թե որ օղակին է հարկավոր օգնել։ Իսկ մեզ ի՞նչ օգնել։ Մի Մարուշ ունեմ, որ օրական 150 կիլո մաքուր բամբակ է հավաքում, իսկ Օֆիկի ձեռքերը մեքենայի պես են աշխատում...

— Բա դո՞ւ,— միջամտեց Անիկ Ազիզյանն ու գրկելով Մարգոյին, նստեց նրա մոտ։— Քո չորս քաշի չափ բամբակ ես լցնում բարդաններն ու միայն մեր մասին ես ասո՞ւմ։

— Երանի՜ թե ես էլ կարողանայի,— երազեց պիոներ Աչիկը։

Ջանաքաղները ծիծաղեցին։ Պիոներները սիրով լի հայացքով նայեցին Մարգոյի ժպտուն աչքերին, լայն գոգնոցին... Մարգոն նկատեց այդ և ասաց․

— Ոչի՜նչ, Մանիկ ջան, մի ուրիշ օղակի օգնեցեք էլի, ի՞նչ կա որ...

— Կօգնենք — խոստացավ Մանիկն ու նայեց դեպի Արագած թեքված արևին։

Պիոներները դուրս եկան ասֆալտապատ խճուղի, ապա դարձան ձեռքերով հրաժեշտ տվին ջանաքաղներին ու քայլեցին դեպի գյուղ։ Այս անգամ նրանք չէին երգում։

4.

— Մարգո՛, օղակդ այսօր հազար հինգ հարյուր կիլո բամբակ է հանձնել,— հաշվումները դեռ չվերջացրած ուրախ բացագանչեց բրիգադիրը,— կեցցե՜ս։

Մարգոն գլուխը կախ կանգնել էր պահեստի մեծ կշեռքի մոտ ու քթի տակ ժպտում էր։ Օղակի աղջիկները ծափահարելով մոտեցան ու բոլորը միասին գրկեցին նրան։

Մանիկի պիոներական օղակն էլ էր

այդտեղ։ Նրանք էլ սպասում էին իրենց սայլին։

Շուտով Մարգոն լուսնի լույսից փայլող խճուղիով քայլեց դեպի տուն։ Հանկարծ նրա ետևում թփթփոցներ լսվեցին։ Նա դարձավ ձայնի կողմը։ Մանիկն ու Գևիկն էին։

— Ընկե՛ր Մարգո, ընկե՛ր Մարգո,— հևիհև մոտենալով գոչեց Մանիկը,— այսօր իմ օղակը հավաքեց այնքան, ինչքան դու։

— Այսինքն՝ ինչքա՞ն։

— Դե՜... 200 կիլոգրամ էլի,— հպարտացավ Գևիկը։

— Քիչ է, Մանիկ ջան, քիչ է,— կատակով ասաց Մարգոն։

Մանիկը չհասկացավ կատակն ու կմշտեց Գևիկի թևը։ Տղան աչքերը չռեց, բայց ձայն չհանեց։

— Վաղը երևի չորս հարյուր կիլո հավաքենք,— ասաց Գևիկը։ Դա էլ Մանիկի կմշտոցի պատասխանն էր։

— Ցտեսությո՜ւն,— հանկարծ բացագանչեցին երեխաներն ու ետ վազեցին, վիճելով իրար հետ։

5.

Անցավ ոսկեզօծ հոկտեմբերը, եկավ նոյեմբերը։ Արշալույս կոլխոզը շատ բամբակ հավաքեց, շատ խաղող քաղեց։ Հազարավոր կիլոգրամ անուշահոտ խորդենի հանձնեց պետությանը...

Նոյեմբերի սկզբի մի երեկոյան Էջմիածնից գյուղ էր սլանում մի ավտո։ Ահա ավտոն մոտեցավ կոլխոզի գրասենյակին և դանդաղեցրեց ընթացքը։ Նա դեռ կանգ չէր առել, որ շոֆերի խցիկից դուրս թռավ Մարգո Եփրեմյանն ու վազեց գրասենյակ։ Նրան շրջապատեցին իր օղակի աղջիկները։

— Հը՜, ի՞նչ եղավ, ի՞նչ եղավ,— միմյանց ընդհատելով հարցրին նրանք։

— Եղավ էլի, լավ էր,— մեղմ ծիծաղեց Մարգոն։

Ռայկոմում լսել էին նրա զեկուցումն օղակի բարձր բերքի մասին ու գովել էին։

Մյուս առավոտ գրասենյակի դուռը մեծ բազմություն էր հավաքվել։ Կոլխոզնիկները կարդում էին հայտարարությունների տախտակին փակցրած ցուցակները։ Ամեն մեկը գտնում էր իր ազգանունը և իմանալով, թե ինչքան մթերք պետք է ստանա, շտապում էր տուն։

Այդտեղ էին նաև Մանիկի օղակի մյուս պիոներները։

— Վա՜յ, մեր ազգանուններն էլ կան,— ծլվլաց Մանիկը։

— Իհարկե՛, քի՞չ բամբակ հավաքեցինք,— ասաց Գևիկը, որի ցուցամատը դեռ վեր ու վար էր անում ցուցակի վրայով։

— Քի՞չ խաղող... կերա՜ք,— կատակեց նախագահը, որը խորդենու պլանտացիաներից նոր էր գալիս գյուղ։

Գևիկն ակամա ժպտաց։ Պիոներները քրքջացին։ Հանկարծ Մանիկը մատը դրեց Մարգոյի ազգանվան վրա ու բացագանչեց.

— Հոռոմսիմ մորաքո՛ւյր, մոտ արի... Պա՜հ, ինչքա՞ն բան պետք է ստանաք,— ծոր տվեց նա։

— Գիտեմ, գիտեմ, Մանի՛կ։

Մանիկը ետ նայեց. Մարգոն էր։

— Ընկե՛ր Մարգո, մենք էլ ենք ստանալու,— հպարտացավ Գևիկը։

— Աշխատել եք, ուրեմն պետք է ստանաք,— միջամտեց կոմերիտական կազմակերպության քարտուղարն ու ավելացրեց.— բայց բյուրոն որոշեց, որ ձեր աշխօրերի եկամուտով պիոներական ակումբի համար գնենք՝ թմբուկ, շեփոր, խաղեր, նկարներ և ուրիշ իրեր, համաձա՞յն եք։

— Այո՛, այո՛,— միաբերան գոչեցին երեխաներն ու ծափահարեցին։

## 6.

Պահեստի դուռնն ուրախ եռ ու զեռ էր։ Երբ Մարգոն, մայրն ու եղբայրները եկան բերք ստանալու, բոլորն աղմկեցին։

— Լավ բերք ես ստանում, Մարգո՛, առատ բերք, ուրախությամբ վայելեք,— բարեմաղթեց բրիգադիրը։

— Մարգոյի օղակի լավ աշխատանքըն իսկական առատության աղբյուր է,— հպարտացավ քարտուղարը։— Հազար երկու հարյուր աշխօր ունեն է՜... իսկ թե ինչքա՜ն մթերք կստանան, դժվար է հաշվել։

Պիոներներն աշխուժացան։

— Հինգ րոպեում կհաշվեմ,— միջամտեց Գևիկը ու մի կտոր թերթի վրա սկսեց գումարել ու բազմապատկել ինչ որ թվեր։ Մարգոյի փոքր եղբայրը՝ Ջիվանը մոտեցել էր նրան ու ժպիտը դեմքին հետևում էր նրա շարժումներին։

— Չորսը ծուռ գրեցի՛ր,— ծիծաղեց նա։

— Դու դեռ չորրորդ դասարան հասիր, հետո մեջ ընկիր,— նեղացավ Գևիկը։ Քիչ հետո ստացան մթերքն ու ճամփա ընկան դեպի տուն։ Մեկ աշխօրին նրանք ստացել էին 4 կիլո ցորեն, 3 լիտր խաղողի հյութ, պանիր, յուղ և ուրիշ մթերք։

Սայլի վրա կային և՛ լիքը պարկեր, և՛ լիքը դույլեր, և՛ կաղամբի կաթնագույն գլուխներ։ Պարկերի վրա բազմել էին՝ Աշիկը, Ջիվանը և Հոռոմսիմ մայրիկը։ Օրորվող եզներին ճիպտելով քշում էր Գևիկը։ Սայլի կողքով քայլում էին՝ Մարգոն, Հասմիկն ու Մանիկը։

Հրավառ մայրամուտ էր։ Արևն այնպես էր իջել Արագածի լանջին, որ կարծես գլորվում էր դեպի Արարատյան դաշտավայրը՝ առատության դաշտավայրը։



**ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ** | **Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ**

*Զընա՛ղ Գորի, սիրուն Գորի,*
*Քեզ սիրում եմ ամբողջ հոգով,*
*Սիրելին ես դու բոլորի,*
*Թռչում եմ քո գիրկը մտքով։*

*Քեզ լավ գիտի ողջ աշխարհում*
*Ամեն մի մարդ՝ մանուկ ու ծեր,*
*Չէ՞ որ այդտեղ է Թավռուն*
*Սոսոն վազել ու միշտ երգել։*

*Քո գրկում է նա արձակել*
*Իր մանկական ճիչն առաջին,*
*Այդտեղից է միշտ ունկնդրել*
*Նա Քուռ գետի անուշ կանչին։*




## Հուշավայրերում
# ԳԱՂՏՆԻ ՏՊԱՐԱՆԸ

**ՀՐԱՉՅԱ ՂԱԶԱՐՅԱՆ** | **Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ**

Մայիսյան արևոտ օր էր։

Ես և ընկերս գնում էինք Թբիլիսիի Հավլաբար կոչված թաղամասը, որտեղ գտնըվում է բոլշևիկյան նախկին գաղտնի տըպարանի շենքը։ Կասպսկայա փողոցի վրա մենք կանգ առանք այդ փոքրիկ շենքի առաջ։ Շենքն ունի ցանկապատված մի ընդարձակ բակ, որտեղ աճում են ծառեր ու ծաղիկներ։ Մի մեծ մարմարյա հուշատախտակ, փողոցի կողմից, փակցված է շենքի աջակողմյան պատի վրա։ Հուշատախտակի վրա վրացերեն ու ռուսերեն գրված է.

«Այս տան նկուղում 1903 թվի նոյեմբե-

րից մինչև 1906 թվի ապրիլի 15-ը Մեծ Ստալինի ղեկավարությամբ գործել է ՌՍԴԲԿ Կովկասյան կոմիտեի գաղտնի տպարանը»։

Մտանք ներս։ Բաքում մեզ դիմավորեց մի երիտասարդ։

— Մեզ կարո՞ղ եք ցույց տալ գաղտնի տպարանը,— ասաց ընկերս։

— Խնդրեմ,— պատասխանեց երիտասարդը,— բարձրանանք վերևի հարկը։

Պատին փակցված էին տպարանը կառուցող բանվորների ու գրաշարների նկարները։ Նրանցից վերջինը մի կնոջ նկար էր։

— Սա ո՞ւմ նկարն է,— հարցրի ես երիտասարդին։

— Տանտիրուհու՝ Մարո Լոշաձե-Բոչորաձեի։ Այս կինն ու իր ամուսինը կյանքերը վտանգի ենթարկելով, ցարական դաժան կարգերի ժամանակ, իրենց տունը տրամադրել են մեր ռևոլյուցիոներ ընկերներին տպարան ստեղծելու համար։ Մեր ժողովուրդը միշտ էլ կհիշի նրանց անունները։



Հավլաբարի ընդհատակյա տպարանի տպագրական դազգահը և գրաշարական արկղները։

Փայտե փոքրիկ աստիճաններով մենք բարձրացանք պատշգամբ։ Այստեղից բացվում էր երկու դուռ։ Մտանք առաջին սենյակը։ Այնտեղ մենք տեսանք բազմաթիվ լուսանկարներ, նամակներ, թերթեր, գրքեր, որոնք կապված էին այդ տպարանի անցյալի հետ։

— Նայիր, Սամվե՛լ,— դիմեց ընկերս ինձ, ցույց տալով ապակեպատ շրջանակի մեջ դրված մի նամակ։— Այս նամակը գրել է Լենինը 1904 թվին արտասահմանից։ Նրանում Վլադիմիր Իլյիչը կարևոր ցուցումներ է տվել Կովկասի բոլշևիկներին։

Մարոն ապրեց մինչև 1946 թվականը։ Մինչև կյանքի վերջին օրերը նա վայելում էր մեր պարտիայի, պետության և ժողովրդի հոգատարությունն ու հարգանքը։

Պատին մենք տեսանք մի մեծ յուղանկար, որի վրա նկարիչը պատկերել է ընկեր Ստալինին երիտասարդ հասակում...

Գիշեր է։ Փոքրիկ գրասեղանի վրա վառվում է նավթի լամպը։ «Ստալինը մտեր-

մարը զրուցում է տպարանի գրաշարների հետ։ Սեղանի վրա փռված են գրքեր ու թերթեր։

Մենք մտանք մյուս սենյակը։ Այստեղ պահված են այն հազվագյուտ թերթերի ու գրքույկների օրինակները, որոնք տպագրվել են նույն տպարանում։ Ահա 1905 թվին տպված «Պրոլետարիատիս Բրձոլա» («Պրոլետարիատի կռիվը») թերթի տպագիր օրինակը։ Այս թերթի էջերում մեծ Ստալինը զանազան կեղծ անուններով հոդվածներ է գրել։

Ահա մի ուրիշ յուղանկար։ Սա ցույց է տալիս, գաղտնի տպարանի հայտնաբերումն ու հրդեհումը։

Ամբողջ շենքը կորած է սև ծխի ամպերի մեջ։ Դռներից ու լուսամուտներից դեպի երկինք են բարձրանում կրակի սյուները։ Բակի մի կողմում կանգնած է մի սայլակ։ Երկու ոստիկան սայլակի վրա են բարձում տպագրական մեքենայի մասերը։ Այս կողմում խառն ի խուռն թափված են բազմաթիվ տպագրված թերթեր, թղթի կապոցներ, տառեր։ Կենտրոնում կանգնած է ոստիկանության պետը՝ փայլուն ուսադիրներով ու թեք դրած լայնեզր գլխարկով։ Նրա ձախ կողքին կախված է թուրը։ Նա խոսում է երկու բարձրաստիճան մարդկանց հետ։ Մի այլ ոստիկան մի ձեռքով պատվի առած, իսկ մյուսով ինչ որ թուղթ բռնած, մոտենում է իր պետին։ Նրանց բոլորի դեմքերը չարություն են արտահայտում։

— Իսկ ինչպե՞ս է եղել, որ հայտնաբերվել է տպարանը,—հարցրեց ընկերս։

— Այժմ ես ձեզ այդ մասին կպատմեմ,—պատասխանեց երիտասարդը և մեզ տարավ շենքի բակում գտնվող ջրհորի մոտ։

— Ցարական շները երկար ժամանակ որոնում ու չէին կարողանում գտնել գաղտնի տպարանի տեղը։ Նրանք մասնավորապես գիտեին, որ տպարանը գտնվում է այս կողմերում։ Մի քանի անգամ խուզարկություններ են կատարում, բայց իզուր։ Դա ավելի է կատաղեցնում նրանց։ Բայց ահա 1906 թվի ապրիլի 15-ին նորից են խուզարկում այս շենքը։ Ստուգում են նույնիսկ ջրհորը։ Ոստիկանության պետը երկար ժամանակ նայում է խոր ու մութ ջրհորի մեջ և ուզում է հեռանալ։ Բայց հանկարծ ինչ որ բան մտածելով, նորից է մոտենում ջրհորին։ Վառում է թղթի մի կտոր ու գցում է նրա մեջ։ Վառված թուղթը դանդաղորեն իջնում է և հասնելով այնտեղ, ուր փորված է տպարան տանող ստորերկրյա թունելը, քամու հոսանքով մտնում է թունելի մեջ։ Այսպիսով գաղտնիքը բացվում է։ Այս բոլորին հետևում է այն տխուր տեսարանը, որը դուք տեսաք նկարում։ Տանտիրոջ և մի քանի ռևոլյուցիոներ ընկերների հետ գազանային դատաստան են տեսնում։ Նրանց բանտարկում են ու աքսորում։

Երիտասարդը մեզ տարավ ստորերկրյա այն նկուղը, որտեղ տեղավորված էր գաղտնի տպարանը։ Այստեղ դրված է մի հասարակ տպագրական մեքենա։ Պատի տակ դրված են տառերի արկղիկները՝ լի ամեն տեսակ մեծ ու փոքր տառերով ու տպագրական առարկաներով։ Քիչ հեռվում դրված է փայտյա մի հասարակ սեղան, նրա վրա կավից պատրաստած կուլան է, որից ջուր էին խմում տպարանում աշխատող մարդիկ։ Ամեն մի իր խորը տպավորություն է թողնում։ Թվում է, թե նրանցից ամեն մեկի վրա դեռևս երևում են մեծ առաջնորդի մատների տեղերը։

Ես տեսա պատերից մեկի վրա մի փոքրիկ էլեկտրական զանգ։

— Ինչի՞ համար է այս զանգը։

— Այս զանգի կոճակը եղել է տանտիրուհու սենյակում։ Վտանգի դեպքում նա այս զանգով տպարանում աշխատողներին աշխատանքը դադարեցնելու ազդանշան է տվել։

— Ցարական կառավարությանը,—վերջում ասաց երիտասարդը,—չհաջողվեց ընկճել մեր ռևոլյուցիոներ ընկերների պողպատյա կամքը։ Մեծ Ստալինի ցուցումով այս ավերված տպարանի փոխարեն Անդրկովկասի զանազան քաղաքներում կազմակերպվեցին նոր տպարաններ, որոնք մեծ դեր խաղացին ռևոլյուցիոն շարժման գործում։



ՍԱԲԱՀԱԴԴԻՆ ԱԼԻ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*Սաբահադդին Ալին հայտնի թուրք դեմոկրատ գրող է։ Նա ծնվել է 1907 թվին։ Գրել սկսել է 1927 թվից։ 1934 թվին լույս տեսավ նրա բանաստեղծությունների առաջին ժողովածուն։*

*Ինչպես այդ, այնպես էլ դրանից հետո հրատարակած իր պատմվածքներում, վեպերում և «Գերիներ» խորագրով դրամայում, Սաբահադդին Ալին նկարագրում է ժողովրդի թշվառ դրությունը Թյուրքիայում։ Նա ցույց է տալիս, որ բանվորներն ու գյուղացիներն այնտեղ զործազուրկ են ու քաղցած։*

*Թյուրքիայի ռեակցիոն կառավարողները մի քանի անգամ դատի տվին մեծ գրողին և ֆաշիստական ցույցերի ժամանակ խարույկների վրա այրեցին նրա գրվածքները։ 1948 թվին, այդ դահիճներն սպանեցին Սաբահադդին Ալիին։*

Նա կտրին կանգնած տաշում էր խոնավ, սուր հոտ արձակող տախտակը և նայում դեպի արևմուտք թեքվող արևին։

Մոտենում էր օգոստոսի վերջը, և տերը ցանկանում էր շուտ ավարտել իր տան կառուցումը։ Նա վախենում էր՝ հանկարծ չսկսվեն անձրևները։ Ահա այդ պատճառով էլ արդեն երկու օր է, ինչ կտրի վրա աշխատում են ութ բանվոր։

Ճաշի ժամանակ, տասը րոպե տևող հանգստի ընթացքում, բանվորներին տրվում էր կես ձմերուկ ու մի կտոր հաց։ Նրանք ուտում էին և նորից շարունակում աշխատանքը։ Տունը հինգ հարկից էր։ Այդպիսի բարձրության վրա անհրաժեշտ էր աշխատել՝ խոնավ տախտակների վրա և կիսապառկած վիճակում։ Բանվորներին պատել էր մի տեսակ թմրություն, որը հաճախ գլխապտույտ էր առաջացնում։

Ի՜նչ լավ կլիներ՝ շուտ գար երեկոն։ Այն ժամանակ նա կգնար տուն, կպառկեր մեջքի վրա, կշնչեր ամբողջ կրծքով ու կկանչեր կնոջն ու երեխաներին։

Տերն ապրում էր դիմացի տանը։ Այդ պատճառով էլ բանվորները չէին համարձակվում ոչ միայն ազմկել, այլև բարձր խոսել։ Հաճախ տերը բացում էր լուսամուտը, հենվում պատուհանի գոգին, ժամերով հետևում նրանց աշխատանքին՝ մեկ-մեկ գոչելով. «Լա՛վ է. այնտեղ ծածկե՛ք» կամ՝ «Դադարեցնե՛լ շատախոսությունը»։ Բանվորները վախենում էին խոսել և աշխատում էին լուռ, նույնիսկ այն ժամանակ, երբ տերը բնակարանում չէր լինում։

Հանկարծ կտրի վրա կանգնած բանվորը ցնցվեց։ Նա նկատեց մի փոքրիկ բեռնակրի, որը գալիս էր փողոցով, ուսին դրած զամբյուղի ծան-

ռությունից կռացած։ Ձեռքերով ամուր բռնելով տախտակից, բանվորն սկսեց ուշադիր նայել դեպի ցած։ Փոքրիկ բեռնակիրը, որ շարժվում էր փողոցով այդպիսի դժվարությամբ և թվում էր, թե բեռան ծանրությունից նրա ոտքերը կպչում են սալահատակի քարերին, իր որդին էր։

Նույնպիսի մի ծանր օր, երբ աշխատանք չկար (նա տասնօրյակում հազիվ մեկ օր էր աշխատում), որդուն ստիպված դպրոցից հանեց և այլևս ուսման չուղարկեց։

Կնոջից ու տղայից բացի, նա երկու աղջիկ էլ ուներ։

Հաջող ամիսներին, երբ կարողանում էր աշխատանք գտնել նույնիսկ տասը օր, նա վաստակում էր լավագույն դեպքում վաթսուն պիաստր։ Այդ փողով նա չէր կարողանում ընտանիքը կերակրել, և ահա տղան էլ պետք է աշխատեր։

Էժան գնով առնելով մի հին զամբյուղ, նա երեխային ուղարկեց շուկաները։ Տղան սկսեց ամեն օր տուն բերել քսան կամ քսանհինգ պիաստր։ «Կմեծանա, երևի, 10—15 պիաստր ավելի կվաստակի», — մտածում էր հայրը։

Բայց այս անգամ նրան չափից ավելի էին բեռնել։ Երբ արևն ընկավ երեխայի դեմքին, հայրը նույնիսկ նկատեց, թե ինչպես նրա ճակատին քրտնքի կաթիլներ են փայլում։ Ծառայի տեսքով մարդը, որ գալիս էր փոքրիկ բեռնակրի հետ, երբեմն կանգ էր առնում և ինչ որ բան ասում երեխային. ըստ երևույթին, շտապեցնում էր։ Երբ նրանք մոտեցան, հայրը կարողացավ որոշել զամբյուղի մեջ դրված առարկաները։

Շշերի հետ խառը դարսված էին զանազան մեծության պահածոներ՝ գունավոր, փայլուն պիտակներով։ Ավելի շատ էին փոքրիկ ու հաստափոր, կլոր ու կոնաձև, նեղ ու լայն բերաններով շշերը։ Նրանք լցված էին սպիտակ, կանաչ, մուգ կարմիր գույնի խմիչքներով։ Բեռն այնքան ծանր էր, որ թվում էր, թե ահա ուր որ է կճզմի երեխային։

Հայրը ճանաչեց երեխայի հետ քայլող մարդուն։ Դա տիրոջ ծառան էր։ Երևում էր, որ այսօր այնտեղ՝ դիմացի տանը ճաշի հրավերք կա։ Այդ մասին էին խոսում շշերի մեծ քանակությունը, տարբեր տեսակի ձկնեղենը և պահածոների շատ տուփերը։

Բեռնակիրն ու ծառան մոտեցան տան դռանը։ Երեխան հենվեց պա-



տին, ոտքը դրեց սանդուղքի աստիճանին։ Վերևից հայրը տեսնում էր, թե ինչպես լարվածությունից դողում էին երեխայի ծնկները։ Երեխային ոչ մի կերպ չէր հաջողվում աստիճանին դնել մյուս ոտքը։ Զամբյուղը անչափ ծանր էր։ Ծառան դժգոհ տեսքով, ձեռքերը ետևը դրած, կանգնել էր երեխայի կողքին։

Վերջապես երեխան, ճիգ գործադրելով, բարձրացավ աստիճանի վրա, հետո մեծ դժվարությամբ, հաղթահարելով սանդուղքի մնացած երեք աստիճանները, մտավ տուն։

Իսկ վերևում հայրը, հազիվ շունչը պահած, սպասում էր նրա վերադարձին։

— Հե՜յ, աշխատիր,— կտրի մյուս կողմից նրա վրա գոռաց վարպետը։

Ցնցվելով, նա սկսեց կացնով խփել տախտակին. նրա ամբողջ միտքն այնտեղ էր, դիմացի տանը։ Երբեմն նա կանգ էր առնում և ուշադրությունը լարում, բայց իր սրտի զարկերից բացի, ոչինչ չէր լսում։ Քիչ հետո, կացինների աղմուկի հետ, նրան հասավ ջարդվող ապակու ձայն։ Կռանալով՝ նա լարեց լսողությունը։

Դիմացի տանը ինչ որ մեկը կոպիտ ձայնով գոռում էր, բայց խոսքերը չէին հասկացվում։ Երբեմն նրան թվում էր, թե լացի ձայն է լսում։ Հետո ձայները մոտեցան դռանը։

Ամենից առաջ դռնից դուրս եկավ երեխան։ Նա լաց էր լինում. մի ձեռքով նա բռնել էր պարանը, որի ծայրից կապված զամբյուղը քարշ էր գալիս գետնին, իսկ մյուսով՝ ծունկը։ Նրա ոտքից արյուն էր հոսում։ Ետևից երևաց կատաղած ծառան։

— Դե՛ շուտ, հեռացի՛ր այստեղից,— գոռաց նա երեխայի վրա։

Տղան բարձրաձայն լաց էր լինում և ինչ որ բան ասում, բայց նրան հնարավոր չէր հասկանալ։

— Այստեղից կորի՛ր, հեռացի՛ր... Քո երեսից ինձ էլ հասավ... Չէիր կարողանում բերել, ինչո՞ւ էիր վերցնում...

Երեխան ցանկացավ ինչ որ պատասխան տալ։

— Հո բամբակ չէինք բերում,— ասաց ծառան։

— Այսքան տեղ բերել եմ, գոնե տվեք իմ փողը,— արցունքները սրբելով աղաչում էր տղան։

Ծառան ուսերն էր թոթվում։

— Դու ջարդել ես երկու շիշ՝ ամեն մեկը հարյուր հիսուն պիաստրի արժողությամբ, դա հավասար է երեք լիրայի ու դեռ փող է՞լ ես ուզում,— ասաց նա և անհետացավ փոքրիկ դռան ետևում։

Երեխան դեռ չէր հեռանում և կամաց լաց էր լինում։ Արյունը հոսում էր վիրավորված ոտքից և ներկում տան առջևի սալաքարերը։

Թվում էր թե հայրը՝ վերևում, քարացել է։ Նա լուռ նայում էր ներքև ու մտածում. եթե ինքը միջամտի ու պարզվի, որ դա իր երեխան է, ապա տերն իրեն դուրս կվռնդի։ Եթե նա ասի, թե ինչո՞ւ եք վիրավորում երեխային, վճարեցեք նրան իր փողը, դարձյալ կվռնդեն։ Ահա թե ինչու նա չէր կարող աշխատանքը թողնել և ներքև իջնել։ Սակայն, ճիշտն ասած, այդ մասին, նույն պահին, նա չէր մտածում։ Նա բութ հայացքով նայում էր ներքև և ձգտում չափավորել սրտի

ուժեղ տրոփյունը. Թվում էր, թե ահա ուր որ է սիրտը կրծքից դուրս կգա։

Հանկարծ դիմացի լուսամուտը բացվեց, և սկզբում երևաց տիրոջ ճարպոտ փորը, իսկ հետո կարմիր դեմքը։ Լուսամուտից դուրս ձգվելով, նա բարձրաձայն գոչեց.

— Հե՜յ, մի՛ կռնչա այս լուսամուտի տակ։ Հեռացի՛ր այստեղից...

Նույն պահին դռնից դուրս պրծավ ծառան, բռնեց երեխայի թևը, որը նստել էր զամբյուղի վրա ու լաց էր լինում, նայելով վիրավորված ոտքին։

— Ա՜խ, ապակին մտել է ոտքիս մեջ,— ճչում էր երեխան։

— Գնա, ուրիշ տեղ ոռնա,— գոչեց տերը։

— Իմ փողը տվեք։

Լուսամուտի առջևի մարդը զայրույթից շառագունեց.

— Քշիր այդ լակոտին այստեղից...

Ծառան բռնեց փոքրիկ բեռնակրի թևից և քարշ տալով հեռացրեց։ Երեխան, զամբյուղը ձեռքին լաց էր լինում։ Այնտեղ, որտեղ նստել էր նա, սալահատակը բոլորովին կարմրել էր արյունից և արևի տակ դժգույն փայլում էր։ Կտրի վրայի մարդը անշարժ ներքև էր նայում։ Նրա աչքերը լցվել էին արյունով, գլուխն այրվում էր։ Նա ձեռքը մոտեցրեց կոկորդին, կարծես օձիքը խեղդում էր։ Երեխան չէր շարժվում, ոչ թե նրա համար, որ ցանկանում էր փող ստանալ. նա ցավից չէր կարողանում քայլել։ Ծառան աչքը չհեռացնելով լուսամուտից, կոպիտ կերպով հրեց նրան. տղան երեսնիվայր ընկավ գետին, ամուր բռնած իր զամբյուղը։ Նա այլևս լաց չէր լինում։

Կտրի վրայի մարդու աչքերը մթնեցին, գլուխը խշշում էր, ինչպես արևի ճառագայթից։ Նրա ոտքերը դողում էին։ Զգալով, որ ոտքերը հետզհետե թուլանում են և ծնկները սկսում են ծալվել, նա փորձեց բռնել իր գլխի վերևում եղած տախտակից, սակայն մատները նույնպես թուլացել էին և չէին ծալվում։

Նրա մարմինը թեթևորեն սահեց տախտակների վրայով։ Կարծես, նա մի ակնթարթ կանգ առավ կտրի ծայրին և ապա՝ թռմփաց սալահատակի մեջտեղը, ինչպես հողով լցված պարկ։

Ծառան, որը փորձում էր բարձրացնել երեխային, փախավ, իսկ լուսամուտի առջևի մարդը դեմքը զզվանքով կնճռոտեց և, արմունկով փակելով լուսամուտը, փակվեց սենյակում։

Թարգմ. Ց. ՇՈՂԵՆՑ





# ԱՐԻՈՒԹՅՈՒՆ

(Ըստ Գեորգի Տուշկանի)

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Արդեն երկրորդ օրն էր, որ պիոներները հետախուզում էին։

Հասանը առաջարկեց Ալմա-տալա գետի հովտով շրջանցել Բոլշոյ Կապչուգայ լեռը, բայց Ռոմկան հակառակվեց։ Նա ասաց, որ վայրի այծերի նման պետք է անցնել դժվար տեղերով։ Հետախույզների շարքում թուլամորթներ չեն կարող լինել։

Պիոներները կատարելով Ռոմկայի առաջարկը, իրիկնադեմին հասան լերկ ժայռերի ստորոտը։

Առավոտ էր։

Տղաները առաջ շարժվեցին և կեսօրին հասան Բոլշոյ Կապչուգայ լեռը։ Նրանց դիմաց բացվեց մի խոր կիրճ։

Տոպսը և Գնոմիկը երկյուղով ներքև նայեցին։

— Կարո՞ղ ենք անցնել,— հարցրեց Հասանը։

— Առա՜ջ...,— բացագանչեց Ռոմկան։

Հասանը զառիվայրից չէր սարսափում։ Նա մի փայտի օգնությամբ դանդաղ և զգույշ սկսեց իջնել։ Այսպես, իրար ետևից իջան նաև մյուս տղաները։ Նրանք առանց դժվարության կիրճի միջով անցան գետակը։

Մի ժամ հետո պիոներները, ժայռերը մագլցելով բարձրանում էին դեպի վեր։ Նրանք դժվարությամբ էին շնչում։ Մեջքերին եղած լիքը պայուսակները նրանց ետ էին ձգում։

Ռոմկան սկսեց երկյուղ կրել, բայց չէր համարձակվում այդ մասին պիոներներից որևէ մեկին ասել։ Դրա համար էլ նա առաջարկեց խմբի ամենափոքր անդամի Գնոմիկի սիրուն ետ վերադառնալ։ Բայց Գնոմիկը շատ հանգիստ պատասխանեց, որ ինքը չի վախենում։

Ճիշտն ասած, բոլոր տղաներն էլ վախենում էին, բայց նրանց ինքնասիրությունը թույլ չէր տալիս այդ արտահայտելու։ Նրանք բարձրանում էին ավելի վեր, որովհետև համոզված էին, թե շուտով կվերջանա այս «դիվային ճանապարհը»։

Տղաներն արդեն գետակից շատ էին բարձրացել։ Կածանն այնքան էր նեղացել, որ հնարավոր չէր առաջ շարժվել։ Նրանք չէին կարողանում իրենց երեսի քրտինքը սրբել։ Ձեռքերով հազիվ էին բռնել ժայռերի դուրս ցցված քարերից։

— Ետ դառնանք,— ամբողջ մարմնով դողալով, կամաց ասաց Ռոմկան։

— Ինչպես կարո՞ղ ենք շուռ գալ, դժվար է,— պատասխանեց Եգորը ու նորից շարժվեց առաջ։

— Սոճի՜...,— շշնջաց Ռոմկան։

— Նշանակում է մոտենում ենք գագաթին,— ասաց Եգորը։

Սոճին աճել էր ժայռի ճեղքվածքում և տղաների կանգնած տեղից բաժանվում էր մի փոքրիկ վիհով։ Ծառի շուրջը հինգ թվանշանի նման, հողի մի տարածություն կար։ Պիոներները մեծ դժվարությամբ կարողացան մեկ-մեկ թռչել ծառի մոտ։

— Այժմ պետք է ծառը մագլցել,— առաջարկեց Եգորը։

— Ծա՜ռը...,— սարսափեց Ռոմկան։

— Տղե՛րք, մենք չենք կարող ներքև իջնել,— ասաց Եգորը, ուշադրություն չդարձնելով Ռոմկային,— պետք է բարձրանալ սոճու կատարը, այնտեղից հեշտությամբ կարող ենք թռչել գագաթի վրա, այ, տեսնում եք, ճյուղերի միջից երևում է։

Եգորն սկսեց մագլցել ծառն ի վեր։

— Գնոմիկ, — բղավեց նա, — հավաքիր բոլոր պարանները և արի ինձ մոտ։ Կարո՞ղ ես։

— Իհարկե, — պատասխանեց Գնոմիկը, չմտածելով, թե ինքը ինչպես կարող է այդպիսի հաստ ծառ մագլցել։



Գնոմիկը շատ չարչարվեց, բայց գործը գլուխ չեկավ։

— Հարկավո՛ր չէ,— ասաց Եգորը ու ծառից ցած իջավ։

Նա տղաներին պատմեց իր պլանի մասին։

Եգորը պարանները կապեց իրար և մի ծայրը ամրացնելով իր գոտուն մագլցեց ծառը։ Նա ամուր բռնելով ճյուղերից մեկը, կարողացավ Գնոմիկին բարձրացնել։

— Գնոմիկ,— ասաց Եգորը,— տեսնո՞ւմ ես այս ճյուղը, դու պետք է բարձրանաս նրա վրա և այնտեղից ուղիղ ցատկես գագաթին։

Գնոմիկը համաձայնվեց։ Եգորը պարանի մի ծայրն ամուր կապեց նրա գոտուն, իսկ մյուսը՝ ամրացրեց ծառի հաստ ճյուղերից մեկին։

— Գնոմիկ, միայն դու կարող ես փրկել մեզ, դու ամենաթեթևն ես,— լուրջ ասաց Եգորը։— Լա՞վ։

— Լա՛վ,— հուզված պատասխանեց Գնոմիկը։

Նա աչքերը լայն բաց արած նայեց Եգորին։

— Վախենո՞ւմ ես,— շշնջաց Եգորը։

Գնոմիկը շուռ եկավ դեպի ճյուղը։ Նա զգույշ շարժվում էր առաջ։ Ճյուղը տատանվեց։ Գնոմիկը ձեռքերը թափահարեց, քիչ մնաց, որ ընկնի։

— Թռի՛ր, դե թռի՛ր...,— բղավեց Եգորը։

Գնոմիկը երկյուղով մի քայլ ևս արեց։ Ճյուղի ծայրը ծալվեց ու նա ուղիղ ընկավ գագաթին։

— Արդե՛ն, արդե՛ն,— ուրախ բացագանչեց Գնոմիկը և ոտքի կանգնեց։

Գնոմիկը առաջին պարանի ծայրը ամրացրեց գագաթին գտնվող սոճու ճյուղերից մեկին, իսկ երկրորդի ծայրը կապեց նույն ծառին մի մետր ավելի բարձր, քան առաջինը։ Այսպիսով ստացվեց փոքր կամուրջ, որի վրայով կարելի էր անցնել։

Այսպես բոլորն էլ հասան գագաթին։

Բոլորն ուրախ էին, որ այդպիսի դժվար ճանապարհ ընտրեցին։ Ոչ ոք չհանդիմանեց Ռոմկային։



*— Ձեզանից ոչ ոք չվախեցավ,—ժպտալով հարցրեց Եգորը։*

*Տղաները ծիծաղեցին։*

*Հետո նրանք սկսեցին պատմել, որ վախենում էին, բայց ոչինչ չէին ասում իրար։*

*— Համարձակ խոսելը նույնպես արիություն է,—ասաց Եգորը։*

*Պիոներները հավանություն տվին նրա ասածին։*

*Հ. ՍԵՎԱՆ*

1950 ԹՎԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 24-Ը ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐՆ Է։

ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ԲՈԼՈՐ ՎԱՅՐԵՐՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԿՐԻ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ԿԳՆԱՆ ԴԵՊԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԵՐԸ ԵՎ ՄԻԱՀԱՄՈՒՌ ՁԱՅՆ ԿՏԱՆ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ՝ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՐԺԱՆԻ ԶԱՎԱԿՆԵՐԻ ՕԳՏԻՆ։

ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր, ՁԵՐ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ՑՈՒՅՑ ՏՎԵՔ ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԵՐԻՆ ԵՎ ԸՆՏՐՈՂՆԵՐԻՆ։

# ՄԵՐ ՁԱՅՆԸ

*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

Մեր ծնողների ձայնը սրտագին
Քե՛զ, մեր ուսուցիչ, մեր հայր թանկագին,
Քե՛զ, մեր քույրերի ձայները զվարթ,
Դու՝ հավերժական մեր մեծ դեպուտատ:

Թեև փոքրիկ ենք մենք ընտրողներից
Եվ դեռ իրավունք չունենք ընտրելու,
Բայց մենք խնդրել ենք մեր ծնողներին
Իրենց ձայնի հետ մեր ձայնն էլ տալու

Քե՛զ, անմար արև մեր երջանկության,
Քե՛զ, արթուն պաշտպան մեծ խաղաղության.
Թող հզորանա և թող առավել
Ծաղկի անմահ հայրենիքը մեր:

## ԻՄ ՍԱՀՆԱԿԸ

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

Ինչքա՜ն լավն է, ի՜նչ սիրուն
Իմ սահնակը զարդարուն:

Գիտե՞ք, ես եմ պատրաստել,
Ես եմ փայտը կտրատել,
Ես եմ տաշել կողերը,
Ես եմ ներկել նաղերը.
Տակը քաշել եմ թիթեղ,
Որ լավ սահի ամեն տեղ:
Սպասում եմ անհամբեր,
Դե , շուտ արի, ա՛յ ձմեռ,
Որ ստուգեմ ձյուներում՝
Սահնակս լա՛վ է սղղում...

# ԽԻԶԱԽ ՆԱՎԱՊԵՏԸ

ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Ազովի ծովի ափին ապրող մի աղքատ ձկնորսի տղա էր Գեորգին։ Մանուկ հասակից նա սիրեց ծովը։ Նավակում նստած նա թիավարում էր ծովի կանաչ ջրերում, ձուկ որսում։ Երբ ծովն ալեկոծվում էր, քիչ էր մնում, որ Գեորգիի նավակը շուռ գար։ Բայց փոքրիկ նավավարը վարժ թիավարում էր, ճեղքում փրփրած ալիքները և հասնում ափ։ Կատաղի ալիքների դեմ կռվելով Գեորգին դարձավ խիզախ, ճարպիկ, հաստատակամ տղա։

Գեորգին միշտ երազում էր նավապետ դառնալու մասին. բայց նրա հայրը աղքատ էր, չէր կարող իր տղային ուսման տալ։

Մի օր տղան փախավ տնից, գնաց քաղաք և դարձավ բեռնակիր։ Իր աշխատած կոպեկներով նա գնում էր սև հաց և գրքեր։ Ամեն օր մինչև ուշ գիշեր կարդում էր Գեորգին և քնում՝ գլուխը դնելով գրքի վրա։

Երբեմն, ճանապարհորդական գրքեր կարդալիս, նա մտքով սլանում էր երազների աշխարհը։ Նրան թվում էր, թե ինքն արդեն մեծացել նավապետ է դարձել։ Եվ ահա նրա նավը լողում է հեռո՜ւ, հեռո՜ւ ծովերում... Երևում են արևադարձային անտառներով պատած կանաչ ափեր... Ահա փոթորիկը կոտրատում է նավի կայմերը, նավը խորտակվելու վրա է, բայց ինքը չի կորցնում իրեն և փրկում է նավը...

Գեորգին սթափվում էր և ասում.

— Ի՛նչ էլ որ լինի ես պետք է դառնամ նավապետ։

Եվ նա համառորեն ձգտում էր իր նպատակին։ Վերջապես Գեորգին ընդունվում է ծովայինների դպրոցը և ավարտում գերազանց գնահատականներով։ Շուտով նա սկսում է հետազոտել Ռուսաստանի հյուսիսային ծովերը։

Մի օր Գեորգի Սեդովն Արխանգելսկ նավահանգստում տեսնում է մի ամերիկյան նավ, որը ուղևորվում էր Հյուսիսային բևեռ։

— Այդ գործը գլուխ չի գա,— ասում է Սեդովը,— ամենից առաջ ռուսները պիտի հասնեն Հյուսիսային բևեռ։

Եվ Սեդովն սկսում է պատրաստություն տեսնել Հյուսիսային բևեռ գնալու համար։

Բայց ինչո՞ւ էր նա ուզում հասնել այնտեղ, ուր բացի սառույցներից և սպիտակ արջերից ուրիշ ոչինչ չկար։

Սեդովը գիտեր, որ երկրի կլիման ճանաչելու գաղտնիքը գտնվում է այնտեղ։

Գեորգի Սեդովը դիմեց ցարական Ռուսաստանի կառավարությանը, խնդրելով օգնություն՝ բևեռային արշավախումբ կազմակերպելու համար։ Նրա դիմումը մերժվեց։ Բայց Սեդովն այնպիսի մարդ չէր, որ հրաժարվեր իր նպատակից։ Նա մեծ ջանք թափելով մի կերպ միջոցներ հավաքեց և ձեռք բերեց «Ֆոկա» անունով մի հին նավ։

1912 թվի օգոստոսին «Ֆոկան» դուրս եկավ Արխանգելսկի նավահանգստից և ուղևորվեց դեպի Հյուսիս։

Դա առաջին ռուսական արշավախումբն էր, որ գնում էր հետազոտելու բևեռը։

Շուտով Բարենցի ծովը սառեց և «Ֆոկան» երկար ժամանակ մնաց սառույցների մեջ՝ Նոր Երկրի մոտերքում։



Դաժան սառնամանիքի պայմաններում Սեդովը սկսեց հետազոտել Նոր Երկրի հյուսիսային մասը։ Նա շնասահնակով անցավ այդ կղզու հյուսիս-արևմտյան ափով, գծեց այդ մասի քարտեզը, աստղերի միջոցով որոշեց կղզու աշխարհագրական դիրքը։ Սեդովը քարտեզի վրա նշանակեց մի շարք կղզիներ, որոնք մինչ այդ անհայտ էին։ Այդպիսով նա առաջին անգամ կազմեց Նոր Երկրի ճիշտ քարտեզը։

Սեդովը և իր ընկերները սնվում էին սպանած սպիտակ արջերի մսով։ Դրությունը գնալով ավելի ծանրանում էր։ Զորս կողմը տիրում էր սպիտակ լռություն, բևեռային գիշեր, սաստիկ սառնամանիք։ Սպիտակ արջերը մոտենում էին «Ֆոկային» ու հոտոտում։ Վառելիք չկար, սննդամթերքը վերջանում էր։ Նավում տարածվեց

ցինգա հիվանդությունը, որից թափվում էին մարդկանց ատամները, ուռչում ոտքերը։ Սեդովն էլ հիվանդացավ ցինգայով։ Երբ ընկերները համոզում էին նրան, որ պետք է վերադառնալ, նա ասում էր.

— Նահանջել նշանակում է ընդմիշտ հրաժարվել նպատակից։

Բայց նավը շարժվել չէր կարող։

Ի՞նչ անել։ Սեդովը որոշեց ոտքով հասնել բևեռ։ Նա սննդամթերքը բարձեց երեք շնասահնակի վրա և թողնելով «Ֆոկա» նավը, երկու նավաստու հետ ճանապարհվեց դեպի Հյուսիս։

Դանդաղ էր շարժվում Սեդովի խումբը դաժան սառնամանիքի մեջ։ Սեդովը հազիվ էր քայլում։ Նա քայլեց յոթ օր և ուժասպառ եղավ։ Սահնակ նստեց, բայց հաճախ կորցնելով գիտակցությունը նա վայր էր ընկնում սահնակից։ Նավաստիները Սեդովին պառկեցրին և կապեցին սահնակին։

Այդպիսի ծանր վիճակում անգամ Սեդովը չէր հրաժարվում իր նպատակից։

Երբ ուշքը գլուխն էր գալիս, նա նայում էր իր ձեռքում պահած կողմնացույցին։ Նա ուզում էր համոզվել՝ իրեն բևեռ են տանում, թե ետ։

Նավաստիները Սեդովին նորից խնդրեցին վերադառնալ, բայց նա ասում էր.

— Ո՛չ, ես չեմ վերադառնա, ես պետք է հասնեմ Հյուսիսային բևեռ։ Այն մարդը, որ վախենում է մահից, նա կյանքին արժանի չէ։

Այս խոսքերն ասելիս Սեդովն արդեն մահամերձ էր։ Նավաստիները նրան պատսպարեցին վրանում։ Նրանցից մեկը Սեդովի գլուխը դրեց իր ծնկին, իսկ մյուսը նրան տաքացնում էր վառած պրիմուսով։

1914 թվի մարտի 5-ին Սեդովը մեռավ։ Նավաստիները նրան թաղեցին սառույցների մեջ, Ռուդոլֆի կղզում, և մեծ դժվարությամբ վերադարձան «Ֆոկա» նավը։ «Ֆոկան» ճանապարհվեց Արխանգելսկ։

Անցան տարիներ։ Ռուսաստանում հաստատվեց Սովետական իշխանություն։ Ստալինյան խիզախ օդաչուները 1937 թվին վայրէջք կատարեցին Հյուսիսային բևեռում. նվաճեցին այն։

Գեորգի Սեդովի իղձը կատարվեց։



# ԻՆՉՊԵՍ ԷԻՆ ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐԸ ՀՐԱՊՈՒՐՈՒՄ ՄԻՉՈՒՐԻՆԻՆ

Վ. ԼԵԲԵԴԵՎ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Ամերիկայի ամենահյուսիսային մասը կոչվում է Կանադա։ Այնտեղ հաճախ դաժան սառնամանիքներ են լինում։

Եվ ահա մի անգամ Կանադայից Միչուրինին նամակ եկավ։ Կանադացիները գրում էին նրան, որ իրենց մոտ վերջին ձմեռվա ընթացքում կատաղի սառնամանիքներից ոչնչացել են բոլոր բալենիները, բացի մի տեսակից։

Այդ տեսակը աճեցված էր Իվան Վլադիմիրովիչի կողմից և ինչ որ ճանապարհով ընկել էր Ամերիկա։ Նա հենց այդպես էլ կոչվում էր՝ «Միչուրինյան պտղաբեր»։

Գովասանքներ շռայլելով, կանադացիները Միչուրինին շատ էին խնդրում, որ նա իրենց ուղարկի իր աճեցրած ինչքան կարելի է ավելի շատ տեսակներ։

Բայց, թեպետ նամակը շողոքորթիչ էր, Միչուրինը շատ չշտապեց կատարելու անդրծովյան այգեգործների խնդրանքը։

«Առաջին հերթին հարազատ ռուս մարդկանց համար կաճեցնեմ ես իմ նոր տեսակները...»—մտածում էր նա։

Սակայն ամերիկացիները չհանգստացան։

Որոշ ժամանակից հետո Միչուրինի մոտ՝ Կոզլով եկավ մի ամերիկացի։ Ոչ թե ինչ որ հասարակ մարդ, այլ պրոֆեսոր, Ֆրանկ Նորրիս Մեյոր անունով։

Ամերիկացին հագել էր լայն վանդակավոր վերարկու և դրել էր շլյապա։ Իսկ Միչուրինը, որը դուրս եկավ նրան ընդառաջ, հագնված էր այնպես համեստորեն, որ ամերիկացին նրան սկզբում պարզապես այգու բանվորի տեղ ընդունեց։

Իվան Վլադիմիրովիչը չշտապեց հայտնելու, թե ով է ինքը, բայց ամերիկացին արագ գլխի ընկավ, որ իր առաջ կանգնած է ինքը՝ Միչուրինը։

Նա սկսեց ցավակցել Իվան Վլադիմիրովիչին.

— Զարմանալի է և անհասկանալի, միստր Միչուրին, թե ինչու ձեր կառավարությունը ձեզ բավականաչափ ծառաներ չի տալիս։

Իսկ կառավարությունը այդ ժամանակ Ռուսաստանում ցարական էր։ Նա Միչուրինի աշխատանքներով և հաջողություններով քիչ էր հետաքրքրվում և նրան ոչ մի օգնություն ցույց չէր տալիս։

— Եվ առավել ևս զարմանալի է,—շարունակեց ամերիկացին,—որ դուք մենակ, առանց որևէ օգնության, ստեղծել եք այդպիսի հրաշալի այգի։

Իսկ Միչուրինի այգին այդ ժամանակ արդեն իսկապես, որ հրաշալի էր։

«Կիտայկաների» ճյուղերին կախված էին նոր տեսակի խոշոր, գեղեցիկ խնձորները —«Կանդիլ կիտայկան», «Շաֆրան-կիտայկան», «Բելֆլյոր-կիտայկան»։ Փայլում էին Միչուրինյան հայտնի տանձերը—«Միչուրինի Բերե-ձմեռայինը», «Բերե-հաղթանակը»՝ քաղցր ու հոտավետ։

Բալենիների և սալորենիների բազմաթիվ տեսակներ էր աճեցրել Միչուրինը։ Միչուրինը կարող էր հյուրին ցույց տալ իր հյուսիսային խաղողը և ձմեռվա կլիմայից չվախեցող ծիրանները։ Իսկ ինչքա՜ն այլ բարիքներ կային այգում՝ և՛ «Գիգանտ» մորին, և՛ «Առատ» մոշը, և՛ բալի մեծություն ունեցող հատապտուղներով հաղարջը... Իսկ վարդե՜րը, իսկ շուշաննե՜րը։

Ամերիկացի Մեյորը անվերջ հիանում էր այն ամենով, ինչ տեսնում էր Միչուրինի այգում։

Եվ վերջապես, խոր և հարգալից խոնարհվելով նա Միչուրինին այսպես ասաց.

— Ես ուղարկված եմ նրա համար, որպեսզի հրավիրեմ ձեզ Ամերիկա, միստր Միչուրին... Մենք, ամերիկացիներս, այն-

քան հարուստ ենք, որ կարող ենք գնել ձեր բոլոր ծառերը, արմատներով հողից հանել, փաթաթել, ինչպես կարգն է, և բեռնել նրանց ձեր բոլոր ունեցվածքի և ընտանիքի հետ միասին հատուկ շոգենավի վրա։ Տվեք միայն ձեր համաձայնությունը և այդ բոլորը անհապաղ կատարված կլինի։

Հեշտ չէր, սակայն, հրապուրել հայրենասեր Միչուրինին, որը մինչև իր հոգու խորքը նվիրված էր հայրենի երկրին՝ Ռուսաստանին։

Նա կտրականապես հրաժարվեց։ Այժմ նա արդեն լսելի արտահայտում էր այն, ինչի մասին որ մտածում էր Կանադայի նամակից հետո։

— Ես երբեք չեմ թողնի այն հողը և այն ժողովրդին, որի համար աշխատում եմ ամբողջ կյանքում...— այսպես հպարտ և հաստատ պատասխանեց նա ամերիկացուն։

Երկար համոզեց ամերիկացին, երկար հրապուրեց Միչուրինին զանազան օգուտներով և բարիքներով, որոնք Միչուրինը, նրա խոսքերի համաձայն, կարող էր ստանալ Ամերիկա տեղափոխվելով։ Իվան Վլադիմիրովիչը այդ մասին լսել էլ չէր ուզում։

Ամերիկացի պրոֆեսոր Մեյորը դատարկաձեռն մեկնեց տուն, օվկիանոսի այն կողմը։

Բայց ամերիկացիները դրանով չհանգստացան։

Որոշ ժամանակ անց Միչուրինը նորից նամակ ստացավ, այս անգամ արդեն ամերիկյան կառավարությունից։

Նորից, արդեն գրավոր ձևով, կրկնվում էին բոլոր հորդորները և հրապուրանքները։

«Դուք կարող եք ձեզ համար Ամերիկայում ընտրել ուզած տեղը, որը միայն ձեզ, միստր Միչուրին, դուր կգա. նույնիսկ այնպիսի տեղ, որը ձեզ կհիշեցնի ձեր ռուսական բնակավայրը...,— այսպես էին գրում ամերիկացիները։— Մենք կտրամադրենք ձեզ ուզած քանակությամբ օգնականներ և, այդ բոլորից բացի, 8000 դոլլար ռոճիկ մաքուր ոսկով...»։



Բայց ամերիկյան ոսկին այս անգամ էլ չհրապուրեց Իվան Վլադիմիրովիչին։

Նա այդ նամակին էլ պատասխանեց լիակատար և վճռական մերժումով։

Միչուրինը մնաց հավատարիմ իր ժողովրդին և մինչև իր կյանքի վերջը շարունակում էր ծառայել հայրենի երկրին։

Թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ




Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Այդ օրը Կիրովականի № 3 դպրոցի ստադիոնում առանձնապես մեծ աշխուժություն էր տիրում։

Ֆիզկուլտուրնիկ դպրոցականներն արագ քայլերով անցնում էին ստադիոնի մի ծայրից մյուսը, ուղղում էին հյուրերի համար պատրաստված նստարանները, կարգի բերում վազքուղիները, Թռիչքի փոսերը, սպիտակ ներկով գծում էին վոլեյբոլի և բասկետբոլի հրապարակները։ Դատավորական սեղանների մոտ լուրջ դեմքով տեղ էին գրավում սպորտի փոքրիկ «դատավորները»։

Ամեն ինչ պատրաստ էր սպորտային տոնին՝ դպրոցական սպարտակիադային։

Վերջապես հնչում է փողերի ձայնը։

Հանդիսավոր հնչյունների տակ վազքուղիներն են դուրս գալիս դպրոցի տարբեր դասարանների ֆիզկուլտուրնիկները։ Նրանք բոլորն էլ հագել են սպորտային ֆորմաներ, հուզված են։

Սպարտակիադայի դրոշի հանդիսավոր բացումից հետո սպորտային տոնի մասնակիցների միջև սպորտային ուժեղ ու հետաքրքիր պայքար է ծավալվում։

Ահա վազքուղին։ Փոքրիկ տղան բարձրացնում է կարմիր դրոշակը։

— Ուշադրությո՛ւն, մա՛րշ։

Երեք տղա պոկվելով տեղերից արագ Թափով վազում են դեպի ֆինիշի գիծը։

— Մկրտիչն է, Մկրտիչն է առաջինը,— լսվում են Մկրտիչի ընկերների բացագանչությունները։

— Ո՛չ, տեսեք, Թե ինչպե՛ս է մեր Էդիկը անցնում Մկրտիչից,— այս անգամ արդեն ուրախ գոչում են Էդիկի դասընկերները։

— Էդի՛կ, արա՛գ, արա՛գ։

— Մկրտի՛չ, մի՛ զիջիր, ետ մի՛ մնա։

Պայքարն ավարտվում է Էդիկի հաղթանակով։

— 8,2 վայրկյան,— վայրկյանաչափին նայելով լուրջ տոնով հայտարարում է փոքրիկ տղան, որի կրծքի վրա փողփողում է կարմիր վզկապը, իսկ ձախ ձեռքին կապած կապույտ ժապավենի վրա գրված է՝ «Դատավոր»։

— Էդիկ Մխիթարյանը նվաճեց դրուժինայի չեմպիոնի կոչումը,— հայտարարում է ֆիզկուլտդաստատու Ժ. Պետրոսյանը։ Հանդիսականների ծափերի և ուռաների տակ նա մոտենում է Էդիկին և հանձնում մի կարմիր մայկա, որի վրա երևում է բրոնզով գրված «Դրուժինայի չեմպիոն» բառերը։

Այդ նույն ժամանակ ուժեղ պայքար էր ծավալվում 4×100 մետր էստաֆետային վազքի ձևում մրցողների միջև։ Այստեղ ամեն մի դասարանից մասնակցում է 4 սպորտսմենից կազմված մեկ Թիմ։ Վազում են 6, 7 և

8-րդ դասարանի ֆիզկուլտուրնիկները։

Սկզբում առջևից վազում են 8-րդ դասարանցիները։ Երկար ժամանակ մրցակիցները չեն կարողանում հասնել նրանց։ Բայց ահա էստաֆետային փայտիկը ստանում է Ալբերտը։ Նա արագ մոտենում է առջևից վազողին։

— Ալբե՜րտ, քիչ է մնում, արա՛գ, — հուզված գոչում են 7-րդ դասարանցիները։

Ալբերտն ավելի է արագացնում վազքը։ Նրա և առջևից ընթացող տղայի միջև տարածությունը գնալով փոքրանում է։

Ահա նրանք հավասարվեցին։

—Մի՞թե չպետք է հաղթեմ,—անցնում է Ալբերտի մտքով,—հարկավոր է միշտ բարձր պահել ջոկատի սպորտային պատիվը,—հիշում է ջոկատավարի խոսքերը։

Ահա և ֆինիշի ժապավենը։

Ալբերտն առաջ է նետվում։

— Ալբերտը հաղթեց, Ալբերտը, ուռա՜...

— Կեցցե՛ս, Ալբերտ, —լսվում է 7-րդ դասարանցիների ուրախ կանչը։

—Դա ի՞նչ մեծ բան է որ, —կարծես արդարանալով ասում են 8-րդ դասարանցիները, – մեր դասարանից Կառլեն Կիրակոսյանը միանգամից երկու հաղթանակ է տարել։ Նա առաջին տեղն է գրավել թե՛ երկարության և թե՛ բարձրության թռիչքի մեջ։

—Իսկ մենք հաղթել ենք կոմբինացված էստաֆետայում,—պարտքի տակ չմնալով ասում են 6-րդ դասարանի տղաները։

— Տղանե՛ր, այս կողմը նայեք՝ տեսեք, թե ինչպիսի՜ ճարպկությամբ է բռնցքամարտ մղում մեր դասարանցի Հրաչիկը,—լսվում է մի այլ տեղից,— ամբողջ դպրոցում նրա նման բռնցքամարտիկ չկա, նա հայտնի է արդեն ռեսպուբլիկայում, նրան գիտեն Մոսկվայում։

Եվ իրոք, բռնցքամարտության ռինգում այդ ժամանակ մարտ էր մղում Հրաչիկ Վարդումյանը։ Նա ճարպկորեն կարողանում էր խույս տալ հարվածներից, հարձակվում էր հակառակորդի վրա։ Սակայն նրա մրցակիցն՝ Էդիկը շուտ հանձնվող չէր։ Նա քաջաբար դիմադրում էր իր ուժեղ հակառակորդին։

— Հապա այս փոքրիկները,—ձեռքը դեպի մարմնամարզական անկյունը մեկնելով ասում է դպրոցի դիրեկտոր ընկեր Մելիքյանը,—հրաշալի մարմնամարզիկներ են։

Ճիշտ որ, մարմնամարզական տարբեր գործիքների վրա իրենց սպորտային մարզվածությունն էին ցուցադրում 4-րդ և 5-րդ դասարանների ֆիզկուլտուրնիկները։

Կիրովականի № 3 դպրոցի աշակերտները իզուր չեն անցկացնում դասերից ազատ ժամանակը։ Նրանք ստեղծել են ուժեղ ու կազմակերպված ֆիզկուլտկոլեկտիվ, հասել են սպորտային գերազանց ցուցանիշների։

Այս բոլորի լավագույն ապացույցը Լուսավորության մինիստրության փոխանցիկ Կարմիր Դրոշն է, որ ծածանվում է ստադիոնի վրա։ Դրոշի վրա ոսկե տառերով գրված է. «Ռեսպուբլիկայի դպրոցական լավագույն ֆիզկուլտկոլեկտիվին»։




Նկ. Գ. ՄԱԼԱՅԱՆԻ

Ինչքա՜ն հաճելի է, երբ մասնակցում ես մի որևէ սպորտային մրցության և հաղթանակ ես տանում։ Սակայն հաղթանակին հասնելն այնքան էլ հեշտ չէ։

Ես ուզում եմ պատմել իմ ու իմ ընկերների կողմից թույլ տված այն սխալի մասին, որի պատճառով մեր ջոկատի բասկետբոլի թիմը երկար ժամանակ չէր կարողանում հասնել հաղթանակի։ Ամենից ավելի մենք սիրում ենք բասկետբոլը։ Հաճախ տղաներով ներկա ենք եղել ոչ միայն մեր, այլև ռեսպուբլիկայի ու Միության այլ քաղաքների բասկետբոլի առաջավոր թիմերի հանդիպումներին։ Մենք հիացած դիտում ենք այդ ուժեղ ու ճարպիկ սպորտսմենների ելույթները։ Մեզ թվում էր, որ բասկետբոլիստը պետք է միայն բասկետբոլ խաղա, սպորտի այլ ձևերով զբաղվելը նրա գործը չէ։ Մենք սխալվում էինք։ Այդ բանը հասկացանք այն ժամանակ, երբ դրուժինայի առաջնության մրցությունում մեր թիմը իրար ետևից սկսեց պարտվել։

Ի՞նչն էր մեր սխալը. չէ՞ որ մեր թիմը բոլորից շատ էր դրուժինայում բասկետբոլ խաղում։ Մեզանից յուրաքանչյուրը լավ տիրապետում էր բասկետբոլ խաղալու տեխնիկային, գնդակը արագ փոխանցում էր ընկերոջը, հեշտ կերպով գնդակը անց էր կացնում օղակով։

Հետաքրքիրն այն էր, որ մրցության առաջին րոպեներին հաջողությունը մեր կողմն էր լինում, իսկ վերջում նորից պարտվում էինք։ Մենք հասկացանք, որ միայն բասկետբոլ խաղի տեխնիկային տիրապետելը քիչ է։ Մենք աչքաթող ենք արել ամենագլխավորը՝ ֆիզիկական կոփվածությունը։ Այդ էր պատճառը, որ մենք խաղի վերջին միշտ հոգնում էինք, չէինք կարողանում արագ վազել, թռիչքով բռնել գնդակը։ Իսկ այս բոլորից օգտվում էին մեր մրցակիցները և հաղթանակ տանում։

Եվ ահա մենք սկսեցինք ֆիզիկապես կոփվել։ Մարզումների ժամանակ թեթև ատլետիկայով շատ էինք զբաղվում։ Մրցում էինք վազքում և թռիչքում։ Մարմնամարզական գործիքների վրա զանազան շարժումներ էինք կատարում։ Առավոտյան ամբողջ ջոկատը դուրս էր գալիս լիցքային վարժության։ Մարզումների արդյունքը շատ շուտ երևաց։

Դրուժինայի հաջորդ մրցության մեջ մեր թիմը հաղթեց բոլոր ջոկատների թիմերին և նվաճեց դրուժինայի չեմպիոնի կոչումը։

ԷԴԻԿ ՄԽԻԹԱՐՅԱՆ

(Կիրովականի № 3 պիոներական դրուժինայի բասկետբոլի չեմպիոն, թիմի կապիտան)






Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
(Երկրաբանական գիտությունների թեկնածու)

Նկ. Ա. ՁՈՐԴԱՋՅԱՆԻ

Դուք տեսած կլինեք բազմաթիվ զարդեր, որոնք պատրաստված են զմրուխտի, հակինթի և այլ թանկարժեք քարերի բյուրեղներից։ Թվում է, թե բյուրեղները հղկված են հմուտ վարպետի ձեռքով։ Մինչդեռ նրանք առաջացել են բնության մեջ, առանց մարդու միջամտության։

Եթե մենք խիստ խոշորացնող ակնոցներով նայենք մեր շրջապատին, կնկատենք, որ համարյա բոլոր իրերը բաղկացած են բյուրեղներից։ Այդպիսի ակնոցներին փոխարինում է միկրոսկոպը։

Բազմահարկ շենքերը, ավտոմեքենաները, գործարանները բաղկացած են բյուրեղներից։ Երևանի Օպերային թատրոնը և Լենինի արձանի պատվանդանը կառուցված են գրանիտից, որը կազմված է կվարցի, դաշտային շպատի և փայլարի բյուրեղներից։

Ամպերում, երկրի խորքում, լեռան բարձունքին, անապատներում, օվկիանոսների հատակում, գործարանի հնոցում, բույսերի հյուսվածքներում մենք հանդիպում ենք բյուրեղների։ Երկնքից վայր ընկնող քարերն էլ բաղկացած են բյուրեղներից։

Մենք ապրում ենք բյուրեղների աշխարհում, քայլում նրանց վրայով, կառուցում և երբեմն էլ սնվում ենք նրանցով։ Բյուրեղներից է կազմված օրինակ շաքարը և կերակրի աղը։ Սրանից մի քանի տարի առաջ Սահարա անապատում գտնված է քարաղից կառուցված մի ավերակ քաղաք։ Նշանակում է ուրիշ շինանյութեր չեն եղել։ Մեզանում այդ քաղաքը կհալվեր անձրևներից, բայց Սահարայում անձրևներ գրեթե չեն գալիս։

Հաբեշստանում քարաղն այնքան քիչ է, որ նրա խոշոր բյուրեղները շատ թանկ են գնահատվում։ Մինչև վերջերս էլ քարաղի բյուրեղները օգտագործում էին որպես փողի միավորներ։

Բյուրեղներից են բաղկացած նաև ձյան փաթիլները։ Մի գիտնական հաշվել է բյուրեղային մոտ 2500 ձևի փաթիլներ։

Բյուրեղներն աճում են։ Համոզվելու համար վերցրեք կես բաժակ տաք ջուր։ Ջրի մեջ լուծեցեք երկու թեյի գդալ աղ։ Հետո լուծույթը լցնելով ափսեի մեջ դրեք մի տաք տեղ, թող գոլորշիանա։

Ջուրը գոլորշիանալուց հետո ափսեի հատակին կառաջանան աղի կանոնավոր բյուրեղներ։ Եթե խոշորացույցով դիտեք այդ բյուրեղները, կտեսնեք, որ նրանք լինում են մեծ ու փոքր չափերի։

Բյուրեղների մի մասը ունի հատիկի, իսկ մի մասն էլ՝ պահարանի մեծություն։ Կան բյուրեղներ, որ կշռում են 37000 կիլոգրամ։

Ուրալում դաշտային շպատի մի բյուրեղի մեջ բացված է մի ամբողջ քարհանք։ Լինում են սպիտակ, սև, կարմրավուն, դեղին, կանաչ և կապույտ բյուրեղներ։ Բյուրեղները կոչվում են նաև անկենդան բնության ծաղիկներ։

Բայց միշտ չէ, որ բյուրեղները կարող ենք զանազանել նրանց գույներով։ Բյուրեղներն իրարից զանազանելու լավագույն միջոցը նրանց ձևն է։

Աղի բյուրեղները խորանարդաձև են, ազբեստինը՝ վուշի թելի նման, կվարցինը՝ բազմանիստ, զմրուխտինը՝ ձողաձև, իսկ փայլարինը՝ տափակ։

Բյուրեղներն ունեն տարբեր հատկություններ։ Ալմաստը, գրաֆիտը և ածուխը նույն բյուրեղային կազմությունն ունեն, բայց տարբեր հատկություններ։ Ալմաստն ամենակարծր նյութն է, գրաֆիտը հնոցում չի այրվում, իսկ ածուխը օգտագործվում է որպես վառելանյութ։

Կվարցի և սովորական ապակու կազմությունը նույնն է, սակայն կվարցն ունի շատ հատկություններ, որ չունի ապակին, որովհետև վերջինս բյուրեղային կառուցվածք չունի։

Հին աշխարհում մարդիկ կվարցի ու սառույցի բյուրեղները իրար շատ նման էին համարում։ Բյուրեղ բառն էլ հունարեն սառույց է նշանակում։ Մի գիտնական հնում պնդում էր, թե կվարցը սառույցի տեսակն է և 1000 տարուց հետո սառույցը կվարց կդառնա, իսկ կվարցն էլ 1000 դարից հետո՝ ալմաստ։

Հնում բյուրեղներին բուժիչ հատկանիշներ էին վերագրում։

Միջին դարերում քարերով բուժում էին հիվանդներին։ Օձի խայթածին ուտեցնում էին զմրուխտի փոշի, որի պատճառով էլ մահացությունն ավելի շատացավ։

Մեր օրերում արհեստական ձևով կարելի է բյուրեղներ ստանալ։ Նրանցից պատրաստում են բազաթիվ բարդ գործիքների կարևոր մասեր։ Այժմ որոշ բյուրեղների միջոցով կարելի է գիշերը ինքնաթիռից տեսնել խավարում թաղված քաղաքը։ Ալմաստն օգտագործվում է նավթահորերի հորատման համար։ Նրանով մի քանի կիլոմետր խորությամբ երկրի կեղևը կարելի է ծակել, իսկ կվարցն այժմ հրաշքներ է գործում տեխնիկայում։

Բյուրեղներին ավելի մանրամասն ծանոթանալու համար կարելի է գնալ Երկրաբանական թանգարան՝ Աբովյանի փողոց № 20։




1. Նատրոլիտի բյուրեղներ. 2. Զմրուխտի բյուրեղ. 3. Պիրիտի բյուրեղ. 4. Գրանատի մի բյուրեղ. 5. Ֆլուորիտի բյուրեղի կրկնակ. 6. Մալախիտ. 7. Տոպազի մի բյուրեղ 8. Տուրմալինի բյուրեղներ. 9. Մարգանեցի բյուրեղներից մեկի կրկնակը. 10. Ֆլուօրիտի բյուրեղների մի կույտ. 11. Լեյցիտի մի բյուրեղ.

# ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՖԵՐՄԱՅՈՒՄ

Դ. ԳԱԶԱԶՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

— Մեր կոլխոզի ամենահետաքրքիր վայրերից մեկը անասնապահական ֆերման է, — ասում էր Վաչիկը, — այնտեղ այնքան բան կա տեսնելու, որ անասնաբուժական ինստիտուտի ուսանողները գալիս են և օրերով ուսումնասիրում ու փորձեր են կատարում։

— Քիչ է մնում ասես, որ կոլխոզի անասնապահական ֆերման ինստիտուտի լաբորատորիա է,—ասաց Աշոտիկը։

— Դե՛, կգնանք՝ կտեսնես,—պատասխանեց Վաչիկը։

Լեռների կատարները ծածկված էին վաղորդյան մշուշով։ Կոլխոզնիկները, ոմանք ոտքով, ոմանք կոլխոզի ավտոներով շտապում էին աշխատանքի։

Երբ մենք հասանք ֆերմա, կովերի առավոտյան կիթն սկսվել էր. բայց զարմանալի էր. կովերի կողքին ոչ մի կթվոր չկար։ Կթում էին էլեկտրական ապարատի միջոցով։ Նկատելով մեր զարմանքը, ֆերմայի վարիչ ընկեր Աստղիկը բացատրեց.

— Այս ապարատը ստեղծել են սովետա-



Մենք օրերն ու ժամերն էինք հաշվում անհամբեր։

Մի օր էլ ասացին թե՝ «վաղը գնում ենք»։ Մեր ուրախությանը չափ ու սահման չկար։

— Այնպես գնանք, որ առավոտյան կըթին հասնենք,—ասաց Սիրանուշ մորաքույրը։

Դեռ արևը չծագած մենք ճամփա ընկանք։

կան գիտնականները, որպեսզի թեթևանա կոլխոզնիկների աշխատանքը, մենք ավելի շատ կաթնամթերք տանք երկրին։ Ապարատը բաղկացած է չորս բաժակներից, որոնք կատարում են հորթի բերանի դեր։ Նրանք դրսից ալյումինապատ են, իսկ ներսում ռետինե ծծիչներ ունեն։ Օդի նոսրացման դեպքում այդ ծծիչները կծկվում ու բացվում են։ Երբ մոտորի օգնությամբ օդը նոսրանում է, նրանք կծկվում են և

կովի կրծից դուրս են քաշում կաթը։ Կաթն առանձին խողովակով գնում թափվում է փոքրիկ բաքի մեջ։

— Իսկ մոտորը որտե՞ղ է,— հարց տվեց Աշոտիկը։

— Գոմի մյուս կողմումն է դրված որպեսզի աղմուկից կովերը չխրտնեն,— ասաց ընկեր Աստղիկը։— Կովերը որ խրտնում են, նրանց կաթնատվությունը պակասում է։

Մենք դիտում էինք կթելու պրոցեսը։

Հենց այդ ժամանակ կոլխոզնիկները մոտեցրին մի վագոնիկ, վրան դրին կաթով լիքը բաքերը և տարան։

— Մեր կոլխոզի ֆերմայում բոլոր աշխատանքները մեքենայացված են,— շարունակեց իր զրույցը ընկեր Աստղիկը,— այ, տեսեք, սա էլ մեր խուզող ապարատն է։ Սա հատուկ հարմարանքներով էլեկտրական փոքրիկ մոտոր է, որի ծայրերին ամրացված է խուզող գործիքը։ Այս գործիքը ոչնչով չի տարբերվում սափրիչի խուզող մեքենայից, միայն մի փոքր մեծ է և աշխատում է էլեկտրական էներգիայով։

Ընկեր Աստղիկը միացրեց էլեկարական մոտորի միացուցիչը և խուզող գործիքն սկսեց աշխատել։

— Սրանով կարելի՞ է մարդկանց գլխի մազերը խուզել,— հարցրի ես։

— Իհարկե, եթե ցանկանում ես, ես կարող եմ քո մազերը խուզել,— կատակեց ընկեր Աստղիկը։



— Ինչո՞վ է լավ այդ ապարատը,— հարցրեց Հակոբիկը։

— Սա տնտեսում է ժամանակը, լավացնում է բրդի որակը, անասունին ցավ չի պատճառում և մորթը չի կտրում։

— Բայց չէ՞ որ շատ անգամ ոչխարները խուզում են սարում, որտեղ էլեկտրական էներգիա չի լինում. այդ դեպքում ինչպե՞ս են անում,— հետաքրքրվեց Աշոտիկը։

— Գիտնականներն այդ էլ չեն մոռացել,— պատասխանեց ընկեր Աստղիկը,— այդ դեպքում մենք սար ենք փոխադրում մեր սեփական էլեկտրակայանը, որ մի հասարակ մոտոր է, աշխատում է բենզինով կամ այլ վառելանյութով և արտադրում էլեկտրական էներգիա։

Մենք տեսանք նաև մսուրները, որոնք տարբեր էին, տարբեր տեսակի ու տարիքի անասունների համար։ Այստեղ էլ մեքենայացումը մեծ դեր էր կատարում։

— Առաջ գոմում անասունները շատ անգամ մաքուր ջուր չէին խմում։ Դա խիստ բացասաբար էր անդրադառնում անասունների առողջության ու մթերատվության վրա։ Հիմա անասունների մսուրներին ամրացված են ինքնահոսով ջուր մատակարարող չուգունե մեծ բաժակներ։ Այդ բաժակներից ամեն մեկը այնպիսի հարմարանք ունի, որ երբ անասունը դունչը կպցնում է նրա հատակին, սառնորակ ու մաքուր ջուրը խողովակով հոսում է բաժակի մեջ։ Անասունը խմում է այնքան, ինչքան ցանկանում է. իսկ երբ նա դունչը հեռացնում է բաժակից, ծորակը փակվում է։

— Ընկե՛ր Աստղիկ, երեխաներին ցույց տվեք նաև անասունների համար կեր պատրաստող մեքենաները,— խնդրեց Սիրանուշ մորաքույրը։

— Ես՜ այդ չեմ մոռացել. ահա տեսեք սիլոսահատը, որը սիլոսը ախորժելի ու դյուրամարս է դարձնում. սա էլ ծղոտահատն է, որը կտրում է ծղոտը և հեշտաց-

*նում նրա ուտելն ու մարսելը։ Մենք ու-նենք նաև քուսպը, հատիկը և եգիպտա-ցորենը մանրող, կարտոֆիլը լվացող ու կտրատող մեքենաներ։*

*— Սա բոլորովին էլ գոմի նման չէ, օդն էլ շատ մաքուր ու թարմ է,— ասաց Աշո-տիկը։*

*— Իսկապե՛ս, իսկապե՛ս...— բացագանչե-ցինք մենք միաձայն։*

*— Այդ նրանից է, որ մեր գոմում օդա-փոխությունն էլ մեքենայացված է,— բա-ցատրեց ընկեր Աստղիկը։— Այ, տեսնու՞մ եք այդ վենտիլյատորները։ Նրանք պտտը-վում են էլեկտրական էներգիայի միջոցով և անընդհատ օդափոխում գոմը։*

*— Իսկապես որ կոլխոզի անասնապահա-կան ֆերման նման է ինստիտուտի լաբո-րատորիայի,— ասաց Հակոբիկը։*

*Մենք գոհ և հիացած հեռացանք ֆեր-մայից։*

---



Մեծ թափով վերակառուցվում են եղբայրական Ուկրաինայի քաղաքներն ու գյուղերը։ Ստեղծվում են նոր ավաններ, ագրոքաղաքներ և այլ շինություններ։

Կիևի ծայրամասի Նիվկի խուտորում վերջին տարիներս բարձրացել է առանձնատների մի մեծ ավան, որի գեղեցիկ շենքերում բնակվելու են հին բոլշևիկները և Հայրենական Մեծ պատերազմի հաշմանդամները։ Առանձնատների նախագծերի հեղինակն է ճարտարապետ Ն. Վ. Խոլոստենկոն։

Նկարում՝ նոր ավանի բնակելի շենքերը։

## ԱԶԱՏ ԺԱՄԵՐԻՆ




Շախմատի ձիու քայլերով կարդացեք աշխարհի ժողովուրդների ամենացանկալի բառը։

## ԻՆՉՊԵ՞Ս ԱՐԵՑ

Վահան քեռին ուներ գրքի մի պահարան։

Նա իր գրքերը շարքերով էր հաշվում։ Ամեն մի շարքում կար 20 գիրք։



Փոքրիկ Կարենը մի օր նկատեց, որ ամեն մի միջին արկղում ութական գիրք կա, իսկ անկյունի արկղներից ամեն մեկում վեց գիրք։ Նա վերցրեց 4 գիրք և մյուսներն այնպես դասավորեց, որ շարքերում նույնպես ստացվի քսանական գիրք։ Վերցնելով չորսական գիրք, Կարենը նույնը կրկնեց երկրորդ և երրորդ օրերը։ Նա վերցրեց 12 գիրք, բայց շարքերի թիվը չխախտվեց։

Փորձեցեք գտնել, թե Կարենն ինչպես էր անում։

Թ. ՄԱԴԱԹՅԱՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





„ПИОНЕР"

№ 12

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 22-ой, декабрь, 1950 г. Ереван

*Պատ. խմբագիր՝* **ԳԱՐ. ՍԵՎՈՒՆՑ**

*Խմբագրական կոլեգիա՝* ՍԻՄԱԿ, Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Մ. ԴԱՎԹՅԱՆ, Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, Մ. ՀԱՅԿԱԶՈՒՆԻ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ

*Շապիկը նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № :1, հեռախոսներ՝* 2—44—83, 2—59—06

*ՎՖ 06941. Պատվեր 789. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ, Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ. Արտադրության է հանձնված 25/XI-50 թ.: Ստորագրված է տպագրության 14/XII-50 թ.:*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1950 թ.:*

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՈՒՐԱԽ ԺԱՄԱՆՑ

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ



Փորձեցեք աչքերը
կապած վիճակում

1. Նկարել այս տնակը։
2. Թելել մախաթը։
3. Վառել մոմը։

### Գ տ ե ք

1. Մի մարդու անուն, որի առաջին տառն անջատելուց հետո որից ստացվի մարդու անուն, իսկ երկրորդը անջատելուց հետո, դառնա քաղաքի անուն։

2. Մի անուն, որը կիսելուց հետո դառնա երկու անուն։

### Կստացվի նույն միտքը

«Կատակ» և 2 ուրիշ բառով կազմեցեք այնպիսի մի նախադասություն, որ սկզբից և վերջից կարդալիս միևնույն միտքը և բառերը ստացվեն։




### Ավտոբուսը

Ավտոբուսը Երևանից Արտաշատ գնաց 40 րոպեում։ Անիվներն այդ ժամանակի ընթացքում կատարեցին 30 հազար պտույտ։ Ավտոբուսը վերադարձավ 90 րոպեում։ Վերադառնալիս քանի՞ անգամ ավելի պտույտ կատարեցին անիվները։



### Մ ե կ ո տ ք ո վ

1. Երկու հոգով միատեսակ ափսեներ վերցրեք և լցրեք ջրով։ Ապա կանգնեցեք ստարտում. երբ հրահանգ լինի սկսեցեք քայլել մեկ ոտքով։

Ով շուտ հասնի ֆինիշին, կտանի հաղթանակը։



2. Բուլավան ձեռքի ափի մեջ պահած սկսեք մի ոտքով քայլել։ Ով շուտ հասնի ֆինիշին, կլինի հաղթողը։

3. Ձեռքով շարունակաբար գնդակը հատակին խփելով ստարտից շարժվեցեք դեպի ֆինիշ։ Ով ֆինիշին չհասած բարձրացրած ոտքը դնի հատակին, կամ գնդակը ձեռքից բաց թողնի, պարտված կհամարվի։



Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ